

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱԿԻՑՆԵՐՈՒՆ

## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Գահիրէ Հեռ. 934908 | ԱՒԵՏԻՍ Ն. ԶԱԳԸՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>ՀԱՍՏԱՏ ԻԹԻԻՆ<br>Աթապայի հրապարակ<br>Գահիրէ Հեռ. 906433-906451 | ՍԱՍԻՊ-ԹՈՐԳՈՄ | ԱՐԹՕ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 826211-826291 | ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Ալեքսանդրիա |
| ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 28173 | ՊԵՏՐՈՍ ՈՍԿԵՐԻՉԵԱՆ<br>Ճարտարարուեստական Գործարան<br>702, Շարա Փոր-Սաիտ, Ղամրա<br>Գահիրէ Հեռ. 827594 | ԶԱՐԵՀ ՍԱԳԱՅԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62302 | ՀՐԱԶԴԱՆ ՊԱԼԵԱՆ<br>ՃԱՐՏԱՐԱՊԵՏ<br>Գահիրէ Հեռ. 59004 | ՎԱՀԷ ԴԵՐՁԱԿԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>103, Կամիւրիէ փողոց<br>Գահիրէ Հեռ. 900563 |
| ԵԴՈՒԱՐԴ ԶՕՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906479 | ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 900186-26535 | VULCAN<br>ՌԱՖՖԻ ԳԱԼԸՆԵԱՆ<br>35, Ապու Տարսաա փողոց<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 47240 | STUDIO PARIS<br>ԱՐԱՔՍԻ ՕՀԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 56775 |
| CORDONNERIE CECIL<br>ՎԱՀՐԱՄ ԹՕՍՈՒՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 22425 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐԱՊԵՏ ԹԵՐԶԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 33713 | STUDIO ANTRO<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>37, Թալաաթ Հարպ փողոց<br>Գահիրէ Հեռ. 75542 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԹՈՎՄԱՍ ՄԱՆՃԸԼԸՔԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27873 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐՄԵՆԱԿ ՍԱՀԱԿԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 20506 |
| ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>ԳԱՄԳՈՒՐԷ ԿԱՐԱՍԻՆԵՐ<br>195, Ռամսէս Պողոտայ<br>Գահիրէ Հեռ. 900738 | ՀԱՅԿ ՕՀԱՆՆԷՍԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 39825 | ՎԱՀԱԳՆ ՏԷՖՈՅԵԱՆ<br>ԷԼԵԿՏՐԱԳԷՏ<br>Գահիրէ Հեռ. 79381 | «ԱԼ ՇԱՐՔ» ԿՕՇԻԿԻ ԳՈՐԾԱՏՈՒՆ<br>18, Ապտէլ Ազիզ փողոց<br>Գահիրէ Հեռ. 916531 | LILI<br>ՅԱԿՈԲ Մ. ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ<br>ԿՕՇԻԿԻ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ<br>22, Քասր էլ Նիլ փողոց<br>Գահիրէ Հեռ. 54480 |
| ARABIAN NEON &<br>FLUORESCENT LIGHT CO.<br>ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ<br>135, Մոհամէտ Ֆարիտ փողոց, Ապտին<br>Գահիրէ Հեռ. 43316-44792 | ՅԱԿՈԲ ՏԷՐ ՍՏԵՓԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 917250 | ԺԱՔ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 902670 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄՈՒՇԵՂ ՏԷՅԻՐՄԷՆՃԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>Աղեքսանդրիա Հեռ. 22239 | MAISON ROYALE<br>ԽՈՍՐՈՎ ԶԱՔԱՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910402 |
| BIJOUTERIE DIRAN<br>ՏԻՐԱՆ ԿԻՒՐԵՂԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>2, Պաղտաա փողոց<br>Հելիոպոլիս Հեռ. 62309 | ԱՐԱՄ ՖԵՐՀԱՏ.<br>Գահիրէ Հեռ. 43957-44904 | ՍԱՐԳԻՍ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ<br>ԴԵՐՁԱԿ<br>Աղեքսանդրիա Հեռ. 34572 | MAISON D'ART<br>ՑՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>29, Ապտէլ Խալէք Սարուաթ<br>Գահիրէ Հեռ. 40584 | ELPAR SHOES<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԵՐԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 24073 |
| THE READER'S CORNER<br>BOOKSHOP<br>ԺՈՐԺ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ<br>33, Ապտէլ Խալէք Սարուաթ<br>Գահիրէ Հեռ. 42801 | ՕՐ. ԶԱՊԷԼ ՍՏԵՓԱՆԵԱՆ<br>Գահիրէ | LA PRINCESSE<br>ՊԵՐՃ ԹԱՇՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>1, Էմատ էլ Տին<br>Գահիրէ Հեռ. 917231 | ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 918516 | ՊԵՐՃ ՏԵՐՎԻՇԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 905664 |
| MICKY MOUSE<br>ՎԱՐՈՒԺԱՆ ԱԶՈՒԿԵԱՆ<br>8, 26 Յուլիս պողոտայ<br>Գահիրէ Հեռ. 915570 | ՊԵՏՐՈՍ ՏԸՆԿՃԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ | ՈՄՆ<br>( Վ. Ա. ) | ՆՈՒՊԱՐ ԿԵՐԻԿԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ | Հ. Մ. Մ.<br>ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Գահիրէ Հեռ. 934908 |

# ՃԱՀԱԿԻՐ

12 Մարտ 1970

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ


## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ ՅԱՋՈՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Հայկական Ընթերցասրահի վարչութեան Մշակոյթի առթիւ կազմակերպած դիմակաւոր և անդիմակ պարահանդէսը, որ տեղի ունեցաւ անցեալ Շաբաթ, 7 Մարտ 1970 և որուն ներկայ էին հոծ թիւով ժողովուրդ՝ երէց և երի-



Դիմակաւորներէն մաս մը բեմին վրայ (Լուսանկար ՀՐԱՆԴի)

տասարդ, անցաւ աննախընթաց խանդավառութեան մէջ։

Նախապէս ապահովուած սեղաններու շուրջ համախմբուած, ներկաները հաճոյքով ճաշակեցին սրահի տիկնանց և երիտասարդաց մարմիններուն հոգածութեամբ պատրաստուած և սպասարկուած համադամ ճաշերն ու աղանդերները։

Ժամը 9.30ին «ՐԱՄ ՃԱՄ» առաջնակարգ նուագախումբի ոգեւորիչ նուագածութեամբ՝ զոյգեր սկսած էին արդէն պարել։

Մեծ թիւով դիմակաւոր ծպտեալներ, այլազան և ինքնատիպ զգեստաւորումներով, ներկաներուն հետաքրքրութիւնը կը հրաւիրէին իրենց վրայ։

Օրուան յայտագիրը կը ղեկավարէր սրահի երիտասարդներէն ընկ. Թադէոս Արապեան։ Ներկաները յաջորդաբար ունկնդրեցին հայկական էստրատային երգեր՝ կատարուած Օրդ. Մարօ Գալաճեանի, Սոնա Յակոբեանի և ընկ. Թադէոս Արապեանի կողմէ և որոնց կ'ընկերակցէին ՊՊ. Էտուար Սայեան (երգեհոնով) և Փիլիպ Եմինէճեան (թմբուկով)։

Ժամը 12ին տեղի ունեցաւ դիմակաւորներու տողանցքը, նուագի ընկերակցութեամբ։

Գնահատիչ յանձնախումբ մը, բաղկացած Տիկիններ Ա. Վարժապետեանէ, Մ. Շահպէնտէրեանէ, Ն. Մէլէմէթճեանէ, Ռ. Պօհճալեանէ և Շուշան Տէօվլէթեանէ, ընտրեց լաւագոյններէն ամենաճոխը, ամենաինքնատիպը և յաջողագոյն խումբը, որոնք ստացան արժէքաւոր նուէրներ, իսկ մնացեալ բոլորը ստացան քաջալերական նուէրներ՝ տրամադրուած զանազան հաստատութիւններու և կ.ե. անձերու կողմէ։

Տեղի ունեցաւ վիճակահանութիւն մը արժէքաւոր նուէրներով օժտուած։ Ջերմ մթնոլորտին խանդավառուած՝ երիտասարդ արուեստագէտ նկարիչ Պր. Վահէ Կարօ Վարժապետեան իր նկարներէն մին իբր բացառիկ նուէր յատկացուց այս վիճակահանութեան, որմէ բախտաւորուեցան Տէր և Տիկին Սիմոն Ստեփանեան։

Ուրախ մթնոլորտը շարունակուեցաւ մինչև առաւօտեան առաջին ժամերը։ Շատ ուրախ և անմոռանալի երեկոյթ մը վայելած ըլլալու գոհունակութեամբ ներկաները մեկնեցան սրահէն։



Գարգեւատրուած ամենաինքնատիպ խումբը։ Ձախէն աջ՝ Օր. Սիւզի Քէօրողլեան (ամուսինը), Պր. Մարտիկ Պալաեան (կաթ ըմպող երախան) եւ Պր. Աւետիս Մովսէսեան (կինը՝ յղի վիճակով)։

Կը շնորհաւորենք Սրահին Տիկնանց Յանձնախումբը և երկսեռ երիտասարդութիւնը, ինչպէս միշտ՝ այս պարահանդէսին առթիւ ալ իրենց բերած արդիւնաւէտ աշխատակցութեան համար ու կը մաղթենք անոնց նորանոր յաջողութիւններ։ Պ. Ս.

## ՋՈՒԱՐՃԱԼԻՔՆԵՐ

Երիտասարդ մը օրիորդի մը կ'ըսէ.

— Օրիորդ, հաւատացէք որ սէրս ձեր կուրծքը զարդարող վարդին կը նմանի։

— Պարոն, կուրծքիս դրած վարդս կեղծ է։

***

Գիլեմանօ օր մը կ'այցելէր նախակրթարան մը։ Միջոց մը կանգ առաւ աշակերտի մը դիմաց և հարցուց.

— Ըսէ տեսնեմ զաւակս, չորս և չորս քանի՞ կ'ընէ։

— Պարագայէն կախում ունի, պատասխանեց աշակերտը։

Գիլեմանօ շուարեցաւ.

— Այդ ի՞նչ կը նշանակէ։

— Եթէ մէկը միւսին տակն է, ութ կ'ընէ, պատասխանեց տղեկը։ Իսկ եթէ մէկ միւսին քովն է, քառասունեւչորս։

Գիլեմանօ ժպտեցաւ և ըսաւ.

— Եթէ քիչ մը աւելի մեծ ըլլայիր, քեզ ելեւմտական նախարարս կ'ընէի։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱՀԱՅ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

«ՃԱՀԱԿԻՐ»ԻՆ

Պր. Վաչիկ Թաշճեան՝ ի ընդ Օր. Սեդա Մարթիկեանի բարեկամութիւն նշանախօսութեան առթիւ վասն շնորհաւորութեան, Պր. Արշիլ Մալխասեան (Աղեքս.) կը նուիրէ 100 ե.գ.։

Տէր և Տիկ. Օննիկ Գալուստեան (Խարթում) 100 ե.գ. կը նուիրեն իրենց սիրելագոյն մեծ հօր ոգւոյն։ Օննիկ Գալուստեանի մահուան քառասունքին առթիւ։

ՈՃ (ընկ. Թիւ 1282) խըմբագրատուն իր այցելութեան առթիւ և առ ի գնահատութիւն թերթիս ազգային և հայրենասիրական ուղղութեան՝ կը նուիրէ 100 ե.գ.։

## «ՃԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պր. Վաղինակ Լուսինեան (Խարթում) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ Պր. Հայկազ Տէմիրճեանի (Երեւան)։

Ընկ. Մանուկ Բաքարեկեան (Ֆրեզնօ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ ընկեր Ոսկան Յովհաննէսեանի (Նիւ Եորք)։



## ՍՈՒՏԱՆԱՀԱՅ ԿԵԱՆՔ

(Շար. Ե. էջէն)

մը եւս կազմակերպեց «Հրանդ» մարզարանին մէջ Կիրակի, 1 Մարտ 1970, կ.ե. ժամը 6ին։

Այս ձեռնարկը «ԿԱԼԱ ՏԷ Ջ'ԱՄՍ.ԹԷՕԼ» մըն էր, որուն յայտագրին իրենց մասնակցութիւնը բերին մեծ թիւով երկսեռ երիտասարդներ։

Ջուարթ մթնոլորտի մը մէջ բոլոր ներկաները վայելեցին հաճելի և ուրախ պահեր, միաժամանակ իրենց ծափերովը խանդավառելով յայտագրի մէջ բաժին վերցուցած արուեստասէրները։

***

Հինգշաբթի, 5 Մարտ 1970, կ.ե. ժամը 9.30ին, Խարթումի Հ.Ե.Մ.ի Մշակութային Մարմինը՝ որուն պատասխանատուն է Ազգային Վարժարանի տնօրէն Պր. Օննիկ Գալուստեան, Անմահն Կոմիտասի ծննդեան 100ամեակին առթիւ Ցերեկոյթ-հանդէս մը կազմակերպած է և որուն գեղարուեստական յայտագրին կը մասնակցին Տիկնայք Սարի Վանեան, Վեհանոյշ Թագէոսեան, Օր. Նայիրի Պօզաճեան և Պր. Օննիկ Գալուստեան։

Կը բանախօսէ Սուտանահայ գաղութի Ազգային Վարչութեան անդամ Պր. Նազարէթ Խօմիւրեան։

Սոյն հանդիսութեան նկարագրականը պիտի տանք յաջորդով։

Ուրախութեամբ կը տեղեկանանք նաև՝ որ յաջորդական հանդիսութիւններ պիտի կազմակերպուին նաև՝ նուիրուած Յովհ. Թումանեանի ծննդեան 100ամեակին և Ն.Ս.Օ.Տ.Տ. Վազգէն Ա. Կաթողիկոսի ծննդեան 60ամեակին առիթներով։

Յաջողութիւն և յարատեւութիւն կը մաղթենք Սուտանահայ գաղութի ժրաջան և գործօն անդամ-անդամուհիներուն։

ԹՂԹԱԿԻՑ

Խարթում, 4-3-70







